## Մայրագոյն Ասեանի մէջ

Ճափոնական կառավարութիւնը հրատարակութեան տուաւ Ազգերու Դաշնակցութեան յատուկ յանձնախումբի տեղեկագրին ամփոփումը: Համաձայն իր քաղած տեղեկութեանց, յանձնախումբը տեղեկագիր կը գտնէ Մանչուրիոյ նախկին վիճակը: Զերդանիե նաեւ այդ խնդիրը Ճափոնի տեսակէտը: Այլ կը յանձնարարէ որ Մանչուրիոյն ինքնավար պետութիւն հռչակուի, Չինաստանի անտեսական հովանաւորութեամբ, բայց Ճափոնի խորհրդականներով: Ցեւայ, կը թելադրէ որ Մանչուրիոյն ոստիկանութիւնը օտար ժարդիկներու հրամանի տակ դրուի: Մանթաժանութիւնները ջնջելու համար, կ'առաջարկէ որ բանակցութիւններ կատարուին Մանչուրիոյ, Ճափոնի եւ Չինաստանի միջեւ, անկողմնակալ Ազգերու Դաշնակցութեան կողմէ ընտրուած դիտողներով: Պաշտ Ճափոնի պատասխանատուութեան, յանձնախումբը կը հաստատէ թէ ճիշդ է որ Ճափոնցիներ մասնակցած են Մանչուրիոյ նոր պետութեան հաստատման, բայց կառավարութիւնը պատասխանատու չէ այդ ձեռնարկին համար: Ցեւայ, յանձնախումբը կ'ընդունի Մանչուրիոյ ռազմագիտական կարեւորութիւնը Ճափոնի պաշտպանութեան համար:

---

Ց. Հ. Դ.

### Փարիզ եւ շրջակաները

ԽՄԲ ԼԸ ՄՈՒՆՋԻՕՐ կոմիտէն ժողով կը հրաւիրէ Մէջօ խումբը վաղը Երեքշաբթի երեկոյեան ժամը 8.30ին, ծանօթ հասցէին: Պարտաւորիչ ներկայութիւն:

---

### Հայաստանեայ դատախօսութիւն

Մարսէյլի Հ. Յ. Դ. Պատանեկան Միութեան կողմէ
Այսօր Կիրակի առաւօտեան ժամը 9.30ին
Միութեան սրահը, 63 րիւ տը լա Ռէփիւպլիք
կը խօսի՝ ընկ. ԿԱՐՕ ՍԱՍՈՒՆԻ
Մուտքը ազատ է

---

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

### Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

ՀԱՏՈՐ Ա.

Հիմնադրութենէն մինչեւ Օսմ. Սահմանադրութիւն (1890—1908)

Շուրջ 500 մեծադիր էջ 80 պատկերներ

Գինը՝ Մ. ՎԱՐԱՆԴԵԱՆ

Գին՝ Ֆրանսա, Սուրիա, Ռումանիա, Պուլկարիա, Յունաստան 40 ֆր.: Ուրիշ երկիրներ՝ 50 ֆր. կամ 2 տոլար: Դիմել՝ L. Tadévossian, գրօշակի հասցէով, 71 Ave. Kléber, Փարիզ (16):

---

### Դերասան Մ. ՄԱՐՈՒԹԵԱՆԻ ներկայացումները

1932 Սեպտեմբեր 17ին Շաբաթ երեկոյ ժամը 8.45ին
Société Savantesի մէջ (28 rue Danton)
„Ինկակարութեամբ զեկուսմոն"
Մ. ՄԱՐՈՒԹԵԱՆԻ
եւ մասնակցութեամբ երգչուհի-դերասանուհի
ՏԻԿ. Ե. ԲԱԴԱԼԻ
Կը ներկայացուի

## ԲՈՌԸ

(Տրամ 5 արար)

Հեղինակ՝ Լ. Վոլինչ
Թարգմանեց՝ Լ. Շանթ
Բեմի վերաձեւեց՝ Մ. Մարութեան

Կը մասնակցին՝ Տիկ. Ե. Բադալ, Պ. Պ. Մ. Կոմիկեան, Թորոսեան, Մ. Մալքասեան, Ս. Պալոյեան, Լ. Փիֆիգեան, Պապազեան, եւայլն:
ՏՈՄՍԱԿՆԵՐՈՒ ԳԻՆԵՐԸ Ա. 20, Բ. 15, Գ. 10, Դ. 5 ֆր.

Տոմսերը կը ծախուին «Զուարթ» խմբագրատան, Դրատուն Հրանտ-Սամուէլ 51 rue Mr. le Prince եւ լուսանկարիչ Phébusի մօտ:

ԾԱՆՕԹ.— Նոյն խաղը կը ներկայացուի Լիոնի մէջ Հոկտ. 22ին, Էվիի Զօլայի մէջ եւ 23ին Տէսինի մէջ, հայ ժողովրդական նոր սրահին մէջ, իսկ Հոկտեմբեր 15ին Մարսէյլի (Շափ) մէջ:

Երգումի Տիկ. Բադալի երգահանդէսները տեղի կ'ունենան Հոկտ. 2ին Վիենի մէջ, Հոկտ. 9ին Լիոնի եւ 9ին Տէսինի մէջ:

---

Լիոնի մէջ ՅԱՌԱՋ կը ծախուի
**ՃԱՆԿԷՕՃԵԱՆ** ճաշարանին մէջ
**202 RUE DE BOILEAU, LYON**

---

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռեմ եղբայրս Սեդրակ Ժորժ, (Ալպերի) ծնած Ուրֆայի: Ֆրանսա կը գտնուէր 1924ին: Կ'աշխատէր Մարսէյլի եւ Օվիա Դադ: Իր մասին լուր ունեցողները կը խնդրուի իմացնել M. Georgeի Café-Restaurant. Il de France. 4 Place Hôtel de Ville, Cannes (A-M)

— Անեցի Տիկ. Անցիլ Ջէնազեան կը փնտռէ իր հարազատը՝ Տիկ. Մարինեան եւ զաւակները՝ Օնիկը եւ Այնթապի Ջէնազեանները, որոնք Փարիզ կը գտնուէին: Օսմա Այա Սոֆիա, Մոլլա Գուրէ, Սելահիէ:

— Կը փնտռուի Պուռ Պազալեան Տէր Գրիգորեան (Միքայէլ Կազանլը գիւղացի): 1915ին 10 տարեկան էր, թուրքերը տարած են: Իր մասին լուր ունեցողները կը խնդրուի իմացնել Մերթայ Տէր Գրիգորեանի, 77 rue Villebois-Mareuil, Asnières Seine.

---

### ՄԱՍՆԱԳԷՏ ԲԺԻՇԿՆԵՐ

96 R. Rivoli, ... 9—12, 2—8, կիրակի 9—12:

---

**Istituto Nazionale Delle Assicurazioni**
Գործակալութիւն «Opéra»
18 Chaussée d'Antin, Փարիզ (9)
Հեռ. Provence 82—48
ապահովագրութիւններ:

---

ՄԵՆԵԱԿ, խոհանոց, ամէն յարմարութիւն, ամսական 250 ֆր.էն, առանց խոհանոցի ամսական 200 ֆր.էն, 60 rue Dombasle.

---

Imp. A. DER (Agopian)
17, Rue Damesme, Paris (13)
Le Gérant H. STEPHAN

---







ԾԱԽՈՒ Է կօշկակարի խանութ մը՝ բոլոր կազմածներով եւ մեքենաներով միասին: Գին՝ 12000 ֆր., որուն 8000 ֆր.ը կանխիկ: Տարեկան վարձք 1500 ֆր., յարկաբաժինով միասին 3000 ֆր.: Պայմ՝ 8 տարի: Դիմել Պ. Սիմոնեանի 135 Route de Chatillon, Montrouge, Seine.

